# ՅԱՌԱՋ

Խմբագիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

"HARATCH,,
JOURNAL ARMÉNIEN
Paraissant trois fois par semaine
Rédaction et Administration / Խմբագրութիւն եւ Վարչութիւն) 208 bis Rue Lafayette
PARIS (10e).

ԲԱԺՆԵԳԻՆ

| | Եռամսեայ | Վեցամսեայ | Տարեկան |
|---|---|---|---|
| Ֆրանսա և գաղութներ | 16 ֆր. | 35 ֆր. | 65 ֆր. |
| Անգլիա և » | — | 10 շ. | 20 շ. |
| Ամերիկա | — | 3 տ. | 5 տ. |
| Ուրիշ երկիրներ | — | 50 ֆր. | 90 ֆր. |

Չէք, մանդափոսթ եւն. գրել Sch. MISSAKIANի անունով

ԿԻՐԱԿԻ
25
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1925

Հեռաձայն Nord 57-82

Ա. ՏԱՐԻ ԹԻՒ 37 — Կը հրատարակուի ԿԻՐԱԿԻ, ՉՈՐԵՔՇԱԲԹԻ և ՈՒՐԲԱԹ — ԳԻՆ 40 ՍԱՆԹԻՄ


ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## ԼՐՋՈՒԹԵԱՆ ՀՐԱՒԷՐ

Սուրիոյ դէպքերուն առթիւ, Հայերու անունն ալ կը յիշուի կարգ մը թերթերու մէջ:

Ըսենք անմիջապէս որ, մեզի համար կասկածելի են այդ լուրերուն աղբիւրները, մանաւանդ Սելանիկի «անթել»ները: Պալքանները դասական հնոցն են ինչպէս արիւնոտ հակամարտութեանց, նոյնպէս եւ պղտոր և շոնդալից լուրերու:

Բայց, չմխիթարուինք այս վերապահութեամբ: Պարագաներ կան որոնք ծանրապէս կ'ազդեն մեր կացութեան վրայ: Թեթեւսօլիկներ ալ ունինք, որոնք պատրուակներ կը ստեղծեն: Այս է դժբախտ իրականութիւնը ոչ միայն Սուրիոյ կամ Յունաստանի, այլ եւ հեռաւոր Պարսկաստանի մէջ: Մեր ձեռքին տակ փաստեր կան որոնք ո'ր եւ է տարակուսութիւն չեն վերցներ: Պարսկաստանի մէջ հայ ժողովուրդը բացարձակ վստահութիւն կը վայելէ. եւ սակայն, անհասկնալի այնտեղ ալ կատարուած են ձերբակալութիւններ, ներքին պայքարի մը հետեւանքով: Կարդացէք այդ գործին մանրամասնութիւնները, իմանալու համար թէ մինչեւ ո'ւր կրնայ հասնիլ կարգ մը անհատներու կամ խմբակներու տխմարութիւնը: Յունաստանի մէջ, հայ ժողովուրդին դիրքը խախտած է մէկուկէս տարիէ ի վեր, եւ եկող գացող դահլիճները իրարու հետ կը մրցին, տեղահանութիւնը գլուխ հանելու համար: Այս քաղաքականութիւնը կապ չունի մեր լաւ կամ գէշ ըլլալուն հետ, այլ հետեւանք է ներքին և արտաքին ճնշումներու, տնտեսական եւ դիւանագիտական հաշիւներու: Բայց, այս վիճակին առջեւ, աւելորդ պատրուակներ չտալու համար, մեզի կ'իյնար արթուն կենալ, եւ զգուշանալ զանազան թեթեւութիւններէ: Արդ, առէք յունահայ, նոյն իսկ յունարէն թերթերը, եւ պիտի տեսնէք այլանդակ պատկեր մը, — «Թայֆայ»ական կռիւներ, խափանարար ցոյցեր, քրէական յանցանքներ. մէկ խօսքով՝ դէպքեր որոնք չարաչար կը շահագործուին: Տակաւին վերջերս, պատգամաւորական ընտրութիւններու առթիւ, սարքուած են այնպիսի «հերոսութիւններ», որոնք ընդվզում կը պատճառեն: Աթէնքի մէջ, «Դաշնակցութեան Օրը» տօնուած ատեն, խումբ մը գինովներ կամ սրիկաներ երկու անգամ գրոհ տուեր են ժողովատեղին, և ոստիկանութիւնն անգամ անճրկեր է:

Առջի օր կ'արտատպէինք պոլսական երկու թերթերու մէջ հրատարակուած թղթակցութիւններ, որոնցմէ պարզ կ'երեւար թէ վտանգը անխուսափելի է. «Կառավարութիւնը ուշի-ուշով կը հետեւի դէպքերուն եւ նոյն իսկ անպաշտօն կերպով հասկցուցած է թէ այս վիճակին շարունակութիւնը թոյլատրելի չէ»: Զանց կ'առնենք ուրիշ գռեհիկ պատմութիւններ:

Ինչ կը վերաբերի Սուրիոյ, շատ աւելի փափուկ է կացութիւնը, մանաւանդ որ զինուորական գործողութիւններ ալ կը կատարուին: Ըսենք նորէն. բոլորովին ծիծաղելի է ապստամբութեան մէջ ո'ր եւ է մեղսակցութիւն վերագրել Հայերուն: Ընդհակառակն, ինչպէս կը հաւաստէր վերջերս Փարիզ հասած խլամ մը, ապստամբութեան կողմնակից Արաբները զայրացած են որ Հայերը կամաւոր արձանագրուեր են Տիւրքիներուն դէմ: (Այս վերջին կէտն ալ թիւրիմացութեան արդիւնք է: Հաւանաբար ոստիկան-զինուորներու կ'ակնարկուի, որոնք ամէն ազգէ կ'առնուին, համաձայն տեղական օրէնքներուն): Ապահովաբար այս թիւրիմացութեան հետեւանքով է—, եթէ ոչ ոմրակոծութեան— որ Դամասկոսի ջարդին զոհ գացած են նաեւ հայ գաղթականներ, ինչպէս կը հեռագրէ «Թայմզ»ի թղթակիցը:

Այսպէս կամ այնպէս, մեր հայրենակիցները կը գտնուին նոր տագնապի մը առջեւ, որ ամէն բանէ առաջ պաղարիւնութիւն կը պահանջէ: Աւելի քան երբեք, մեզի կ'իյնայ զգաստ եւ վերապահ դիրք մը բռնել այս ներքին խառնակութիւններուն մէջ, եւ, ամէն բանէ առաջ մտածել հաւաքական շահը: Անոնք որ ճամարտակութիւններ փորձելու մարմաջ ունին, կրնան աւելի յարմար միջավայր մը գտնել: Մեր թերխաշ դաւանափոխները մեծագոյն ծառայութիւնը մատուցած կ'ըլլան «պրոլետարիատ»ի, մանաւանդ հայ «պրոլետարիատ»ի —ամբողջ հայ ժողովուրդի— դատին, եթէ կանոնաւոր ապրուստի միջոց մը գտնեն, կամ անցնին Հայաստան, և աշխատին հայկական գիւղերուն մէջ, որոնք այնքան պէտք ունին «ուսումնական»ներու:

Իսկ ընդհանրապէս, լրջութեան հրաւէր մը կ'ուղղենք բոլոր գործող տարրերուն, ի'նչ դաւանանքի ալ պատկանին: Փորձի, արկածախնդրութեան շրջան չէ, այլ ինքնամփոփ եւ լուրջ աշխատանքի:

Շ.

## ՆՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՊԵԼԺԻՈՅ ՄԷՋ

Պրիւսէլ, 24 Հոկտ.

Գաղթային Յանձնաժողովի ընտրութիւնները տեղի ունեցան Պրիւսէլի և Անվէրսի մէջ, խիստ օրինաւոր պայմաններու մէջ եւ նօտարին հակակշռին տակ:

Համաձայն հաստատուած կանոնագրին, գաղութին մէջ քուէարկելու իրաւունք ունին շուրջ 300 հոգի: Այս թիւին մէջ կայ փոքր մաս մը անտարբերներու, ինչպէս ամէն տեղ: Ուրիշ փոքրամասնութիւն մը կը կազմեն անոնք որ զանազան նկատումներով չեն ուզեր ընդունիլ նախորդ ընտրութեանց ապօրինութիւնը: Այս վերջինները ոչ միայն չեն մասնակցած քուէարկութեան, այլև փոխանակ օրինական ճամբով հրապարակ իջնելու, մանաւորապէս Անվէրսի մէջ, շատերուն արգիլած են մասնակցիլ: Հակառակ այս բոլորին բողոքող քուէարկուներու թիւը հասած է 150ի. մեծամասնութիւն մը որ իր նախընթացը չէ ունեցած մինչեւ օրս: Այս թիւը մեծագոյն անվստահութիւնը. կը կազմէ նախորդ վարչութեան դէմ, ընտրուած միայն 75 քուէարկուներու մասնակցութեամբ, օրինաւոր պիտի նկատուէր, եթէ երբեք ընտրութեանց մէջ բացայայտ զեղծումներ գործուած չըլլային:

Ճշդենք անմիջապէս թէ այս ապօրինութեանց առաջին պատասխանատուները եղան նախորդ ընտրութիւնները վարող առժամեայ դիւաններու ծանօթ առեխապետները՝ և թէ բողոքողները անձի խնդիր չեն յարուցած երբեք ապօրէն վարչութեան անդամներուն հանդէպ: Զարմանալի է սակայն որ այս վերջինները, որոնց մէջ բարեմիտ անձեր ալ չեն պակսիր, չլսելու կը զարնեն եղած ամբաստանութիւնները, կ'արհամարհեն համեստ խաւերուն և երիտասարդութեան կամքը, և կը յամառին կառչած մնալ իրենց աթոռներուն, երբ գիրենք ընտրող միեւնոյն հայրենակիցները անվստահութեան քուէներու կրկնապատիկ թուով կուզան բարոյապէս դատապարտելու զիրենք:

Բոլոր այս տեղեկութիւնները մաքրել կ'իյնայ ի հարկէ նորակազմ վարչութեան, որ ընտրուած է գրեթէ բացարձակ մեծամասնութեամբ և կը բաղկանայ հետեւեալ հայրենակիցներէն.— Պ. Պ. Վ. Խօրասանճեան 150ի վրայ 146 քուէ, Դ. Մսրեան 145, Ա. Մաթոսեան 126, Միրզաբէկեան 119, Տ. Չամքէրթէն 118, Մ. Տէր Սահակեան 111, Գ. Գաբրիէլեան 72: Բացի վերջին երկու երիտասարդ ուժերէ՝ Գ. Գաբրիէլեան (Ռամկավար) և Տէր Սահակեան (Դաշնակցական), միւս հինգը անկուսակցականներ են, և մինչեւ այսօր նախընտրած են անհատապէս օգտակար հանդիսանալ քան ո և է մարմնի մէջ մտնել:

Այս առթիւ ըսենք որ բողոքի արդար շարժումը վարողները եղան երկու անաչառ երիտասարդներ, Պ. Պ. Վարդան Մուրատեան (անկուսակցակա) եւ Գաբրիէլ Գաբրիէլեան (Ռամկավար): Անխղճութիւն է գռեհիկ ակնարկներ ուղղել և մէկը կամ միւսը արատաւորել գաղութը պառակտելու մեղքով: Պէտք է ուրիշ տեղ փնտռել այդ մեղքը:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ ՄԵՐ ՆՈՐ ՀԱՍՑԷԻՆ

208 bis Rue Lafayette

## ՕՐԸ ՕՐԻՆ

## ԾԱՆՐ ԴԷՊՔԵՐ ՍՈՒՐԻՈՅ ՄԷՋ

ՀԱՅԵ՞Ր ԱԼ ԶԱՐԴՈՒԱԾ ԵՆ

Սուրիայէն հասած վերջին տեղեկութիւնները շատ լուրջ կը նկարագրեն կացութիւնը: Դամասկոսի առժամեայ գրաւումը ապստամբներուն կողմէ՝ աղետալի հետեւանք ունեցած է: Սալիհիյէի բարձունքներուն վրայ դիրք բռնած ֆրանսացի թնդանօթաձիգներու անընդհատ ռմբակոծումին հետեւանքով սպաննուած եւ վիրաւորուած են մօտ հազար հոգի, այրած են Մէյտանի կայարանը, Համիտիյէ մեծ շուկան, բազմաթիւ տուներ, վաճառատուներ եւ Ազմ պալատին մէկ մասը: Նիւթական կորուստը շատ մեծ է:

«Թայմզ»ի Հայֆայի թղթակիցը կը հեռագրէ թէ Տէրաայի կողմերը Տիւրզիները գերի բռնած են 400 Ֆրանսացիներ, մեծ մասամբ ալճերիացի: Դամասկոսի եւ Տէրաայի միջեւ հաղորդակցութիւնները ընդհատուած են:

Այս տեղեկութիւններէն կ'երեւի թէ ապստամբներուն ձեռքն անցած էին Դամասկոսի հարաւակողմը, Գատէմի եւ Մէյտանի շրջանները, որոնք նախապէս զուտ իսլամաբնակ թաղեր էին, սակայն քանի մը տարի առաջ 3-400 խրճիթներ շինուեցան հոն՝ հայ գաղթականները տեղաւորելու համար: Խռովութեան պահուն ջարդուած են բազմաթիւ Հայեր, ինչպէս ցոյց կուտայ «Թայմզ»ի հետեւեալ հեռագիրը.—Հոկտ. 19 Երկուշաբթի օր Դամասկոսի մէջ ծագած ըմբոստութեան անմիջական շարժառիթը եղած է անցեալ շաբաթ Դամասկոսի մօտ սպաննուած 24 ապստամբներու դիակներուն քաղաքին մէջ ցուցադրումը: Այս տեսարանը մեծ գրգռութիւն առաջ բերած է ժողովուրդին մէջ եւ ազգայնականներ օգտագործած են անոր այս տրամադրութիւնը: Տիւրզիները օգնութեան փութացին ապստամբներուն, սակայն շատ ուշ հասան, որովհետեւ երբ անոնք տեսնուեցան Դամասկոսի դուռներուն առջեւ, արդէն քաղաքին երեւելիները անձնատուր եղած էին: Դամասկոս խաղաղած է այժմ, բայց նոր խռովութիւններէ կը վախցուի:

«Կ'ըսուի թէ ՄԵԾ ԹԻՒՈՎ ՀԱՅԵՐ ՋԱՐԴՈՒԵՑԱՆ ՄԷՅՏԱՆ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԹԱՂԻՆ ՄԷՋ: Օտարահպատակները խռովութեանց պահուն իրենց հիւպատոսարանները ապաստանեցան, որովհետեւ քրիստոնեայ թաղը անպաշտպան թողուած էր:

Կացութիւնը հիմա խաղաղած է Դամասկոսի մէջ: Ամէր ցեղախումբի և Ճէպէլի հիւսիսակողմի երեւելիներէն շատեր հպատակութիւն յայտնած են նոր կառավարիչ զնդապետ Անտրէայի: Ապստամբները ընդունած են Ֆրանսացիներու պայմանները որոնք են.— 1.— 40,000 եգիպտական ոսկի տուգանք վճարել. 2.— 15 տարուան համար պաշարման վիճակ յայտարարել. 3.— 30,000 հրացան յանձնել:

Սելանիկէն 22 Հոկտ. թուակիր անթել հեռագիր մը խօսելով Սուրիոյ ապստամբութեան մասին, կ'ըսէ թէ այս շարժումին մէջ մասնակցութիւն ունին Պէտէվիները, Տիւրզիները, Սուրիացիները, Լիբանանցիները և մանաւանդ հայ գաղթականները, միացած համայնավարական տարրերուն: Ապստամբական շարժումը կը ղեկավարուի Դամասկոսի կողմերէն, սակայն ֆրանսական իշխանութիւնները հակառակ իրենց փնտռտուքներուն չեն, կրցած ո'չ գրաւել զէնքի եւ ռազմանիւթի մթերքները, ո'չ ալ ձերբակալել ղեկավարները, որոնք են Ճանիպ, Վասըֆ, Հաֆըր, Հօճա Նասիֆ, Աթասի, եւայլն:

ՀԱՅԵՐՈՒ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Երէկ Թէհրանի մեր թղթակցէն ստացուած 8 Հոկտ. թուակիր նամակէ մը ցաւով կ'իմանանք թէ վերջին ցոյցերու ատեն ձերբակալուած են մօտ 15 Հայեր, իբր կասկածելի: Կալանաւորներու տունը խուզարկուելով գտնուած են կարգ մը թուղթեր, որոնց հիման վրայ Հայերու ձերբակալութիւններ կատարուած են նաև ուրիշ քաղաքներու մէջ: Մանրամասնութիւնները յաջորդով:

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

